




## ԼԵՆԻՆԻ ՆԿԱՐԻ ԱՌԱՋ

ԳԵՂԱՄ ՍԱՐՅԱՆ

Նկարն առաջնորդի նայում էր տան պատից.
Մանուկների մի փունջ դիտում էր լուռ նրան։
— Լենինն,—ասաց Սեդան,—տեսե՛ք, նայում է ինձ։—
Արմիկը լաց եղավ.—Ի՜նձ է նայում միայն։

— Ի՜նձ... ի՜նձ... —ձայն են տալիս երեխաներն իրար
Ու հայացքով նրա պատկերն են փայփայում,
Մինչ գալիս է մայրը, ասում է քնքշաբար.
— Լենինը, մանկիկներ, բոլորի՛ս է նայում։

## [illegible]

*(Հատված «Ոսկե մեդալ» վիպակից)*

ԼԱԶՐ ՍՈՒՋԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

*Սիմբիրսկի արական գիմնազիայի ուսուցչանոցում մանկավարժական խորհրդի նիստ է:*

*—Այո՛, պարոնա՛յք, —հուզված ասում է դիրեկտորը, շփելով ակնոցների ապակիները,—ես Ուլյանովին «հինգ» նշանակեցի և այլ կերպ էլ վարվել չէի կարող։ Նրա շարադրության մեջ, չնայած իր ամենասեղմ ծավալին, մտքերի ինչպիսի՜ առատություն կա, ինչպիսի՜ խորություն... իսկ շարադրման սիստեմում՝ կուռ տրամաբանություն... Խոստովանում եմ, պարոնա՛յք,—շարունակում է նա՝ ակնոցները հարմարեցնելով, —այս պատանին հաղթեց ինձ:*

*—Սակայն չպե՛տք է մոռանալ, որ միևնույն այդ շարադրության մեջ արտահայտված են խռովարար մտքեր,—բացականչում է ֆրանսերենի ուսուցիչը՝ կարճլիկ, կարմիր դեմքով, հրացանակըրի սուր, փոքրիկ մորուքով մի մարդուկ:*

*—Դուք միանգամայն իրավացի եք, պարոն Պոր,—առարկում է դիրեկտորը,—ես նույնպես նրան այդ մասին ակնարկել եմ։ Ավելին, նույնիսկ ես նրան հայտնել եմ իմ վրդովմունքը... Դըժվա՜ր է, պարոնայք,—հառաչում է դիրեկտորը՝ հաղթահասակ մի մարդ, ու մոտենում է լուսամուտին, որի հետևում թավ, տերևախիտ ծառի թաքստոցում նստած է Վոլոդյա Ուլյանովի ամենամոտը նկերը՝ սևաչյա մի պատանի, Սերդյուկով ազգանունով։*

*—Դժվար է, այո,—շարունակում է դիրեկտորը,—բայց խղճի հակառակ գնալ չեմ կարող։ Վոլոդյա Ուլյանովի շարադրությունը գրված է հիանալի և արժանի է «հինգ»-ի։*

*Ուսուցչանոցում վառվող կանթեղի պայծառ լույսը խանգարում է գիմնազիայի դիրեկտորին՝ հայտնաբերել տերևների արանքից նայող Կոստյա Սերդյուկովի կերպարանքը, որի դեմքի տագնապալի*

արտահայտությունը հանկարծ փոխվում է բուռն հիացմունքի: Տղան բերկրանքով չռում է իր հինգ մատները և ցույց տալիս այն ծառի տակ խռնված մյուս գիմնազիստներին:

—Բայց դուք հասկանո՞ւմ եք, ձերդ գերազանցություն,—խիստ այլայլված ճչում է կարմրերես մարդուկը,—դուք նրան նշանակում եք «հինգ», լատիներենի ուսուցիչը և մյուսները՝ նույնպես... Եվ դուրս է գալիս, որ թագավորասպանի եղբայրը պարգևատրվում է ոսկե մեդալով...

—Իսկ ես պնդում եմ, որ եթե մեկը արժանի է ոսկե մեդալի, դա Վոլոդյա Ուլյանո՛վն է,—բորբոքված բացականչում է լատիներենի ուսուցիչ Ֆեդորենկոն՝ կապույտ աչքերով մի երիտասարդ:

—Ուլյանովը կարդում է Ցիցերոնին, ինչպես մի հռետոր...

—Ես նույնպես պնդում եմ,—ջերմորեն արձագանքում է սովորաբար խաղաղ՝ մաթեմատիկայի ուսուցիչ Ֆեդոտչենկոն,—ջղաձգորեն քաշքշելով ժամացույցի փոքրիկ շղթան,—դուք գիտե՞ք արդյոք, պր-ն Պոր, որ գիմնազիայում կազմակերպված է թվաբանություն սիրողների խմբակ: Զանգից դեռ շատ առաջ դասարան են հավաքվում, լուծում են դժվարին խնդիրներ... Իսկ ո՞վ է ղեկավարում: Ուլյանովը: Խմբակի բոլոր անդամները «հինգ» են ստանում:

—Սպասեցե՛ք, սպասեցե՛ք,—ատամներ չունենալու պատճառով սվսվացնելով ասում է հունարենի ուսուցիչը, երկար ու ոսկրոտ մատներով թերթելով գրանցումների իր տետրը: Ահավասիկ. ինձ մոտ նույնպես հինգ է, որի համար էլ ահա ստորագրում եմ...

Շտապ, կարծես կատարելով ինչ-որ անհրաժեշտ և խիստ կարևոր մի գործ, ուսուցիչները վճռականորեն նշանակում են «հինգ» թվանշանը այն աշակերտի ազգանվան դիմաց, որը նվաճել էր նրանց համակրանքն իր գիտելիքներով, տաղանդով և երկաթյա իր կարգապահությամբ:

Հանդիսավոր ժպիտը ողողել է գիմնազիայի ղեկավարի դեմքը:

—Եվ այսպես, պարոնայք, ստորագրում եմ ավարտական վկայականը ոսկե մեդալի համար:

Պարոն Պորը ափերի մեջ է առնում գլուխը և, մոտենալով լուսամուտին, արձակում է փողկապը թուլացնում օձիքը:

Սերդյուկովը նայում է նրան և ամբողջ դեմքով մեկ ժպտում: Պորը թափով բաց է անում լուսամուտը և նրա հայացքը հանդիպում է Սերդյու-



կովի ցնծուն աչքերին: Գլխարկը քաշելով մինչև ծնոտը, Սերդյուկովը կոտրատելով դալար ոստերը, թռչում է ծառից ու վազում է փողոց, բղավելով.

—Շլկեցի՛նք, տղե՛րք, ոսկե մեդալը կա, ուռա՛:

Թարգմ. Մ. ՀԱԿՈԲՅԱՆԸ

# Ոսկե մեդալը

Վ. Ի. Լենինի կենտրոնական թանգարանում բազմաթիվ նվիրական իրերի շարքում կա մի ոսկե մեդալ: Դա միակ մեդալն է, որ ստացել է մեծ առաջնորդը: Նա ուրիշ մեդալ կամ շքանշան չի ունեցել: Ամենքին հայտնի է, որ այդ ոսկե մեդալը Վլադիմիր Իլյիչն ստացել է Սիմբիրսկի գիմնազիան

ցերազանց գնահատականներով ավարտելու համար։ Բայց, հավանաբար, քչերը գիտեն, թե ինչպիսի հետաքրքրական պատմություն կա կապված այդ մեդալի հետ և թե ինչ ճանապարհով է այդ մեդալն ընկել թանգարան...

1922 թվականին անբերրիության պատճառով սով էր մեր երկրում։ Մարդիկ ուտում էին նույնիսկ սերմացուն՝ ոչինչ չթողնելով գարնանացանի համար։



Գյուղացիները թողնում էին իրենց հարազատ օջախները և հեռանում գյուղերից։ Բայց քաղաքներում էլ հաց չկար։ Սովետական կառավարությունը ստիպված եղավ հաց գնել արտասահմանից։ Սակայն կապիտալիստները հացի դիմաց պահանջեցին միայն ոսկի, այն էլ ամենաբարձր տեսակի։ Եվ ահա այդ ժամանակ էլ ամբողջ երկրով մեկ սկսվեց ոսկյա իրերի հավաքումը։ Այդ աշխատանքը կատարում էր Սովյալներին օգնող կոմիտեն։

Սովետական մարդիկ կոմիտեի աշխատակիցներին էին հանձնում այն ամենը, ինչ որ ունեին. մատանիներ, ականջօղեր, ժամացույցի ոսկյա կափարիչներ, ոսկեզօծ խաչեր։ Ոսկին ձուլվում էր և մեծ-մեծ կտորներով ուղարկվում արտասահման, որպեսզի այնտեղից վերադառնար որպես հացահատիկ ու ալյուր։

Սովյալներին օգնող կոմիտեի աշխատակիցները գնացին նաև Վլադիմիր Իլյիչ Լենինի բնակարանը։ Ընտանեկան խորհուրդը իսկույն որոշեց հանձնել ունեցած ամբողջ ոսկեղենը, որը շատ չէր։ Բայց դրանց շարքում էր գիմնազիայից ստացած ոսկե մեդալը։ Կոմիտեից եկած ընկերները անդորրագիր տվեցին Լենինին, վերցրին ոսկե մեդալն ու մնացած ոսկեղենը և ուղարկեցին դրամահատարան։ Սակայն մեդալը ձուլարան չգնաց։ Դրամահատարանի աշխատակիցները առանձնացրին այդ մեդալը և սկսեցին ուշադրությամբ զննել։ Գիտությունը հովանավորող հունական աստծո գլխավերևում գրված էր. «Գերազանց առաջադիմողին»։ Կար նաև թվականը՝ 1887։

1887 թվական... Դա ծանր, շա՜տ ծանր տարի էր Ուլյանովների համար։ Մարտ ամսին, երբ Վոլոդյան ավարտական քննություններ էր պատրաստվում, Պետերբուրգից լուր եկավ, որ ավագ եղբորը՝ Ալեքսանդրին, ձերբակալել և նետել են Շլիսելբուրգի ամրոցը՝ ցարի դեմ կատարած մահափորձին մասնակցելու համար։ Ալեքսանդրի հետ միասին ձերբակալել էին նաև քրոջը՝ Աննային։

Մայրը՝ Մարիա Ալեքսանդրովնան, Սիմբիրսկից շտապ մեկնեց Պետերբուրգ։ Վոլոդյան մնաց տանը որպես մեծ։

Եվ ահա Պետերբուրգից եկավ ամենասարսափելի լուրը՝ 1887 թ. մայիսի 8-ին Ալեքսանդր Ուլյանովին ենթարկեցին մահապատժի։ Դատական չինովնիկները Մարիա Ալեքսանդրովնային առաջարկեցին ստանալ տղայից մնացած գույքն ու փողը՝ ետ պահելով մահապատժի ժամանակ օգտագործած օճառի և պարանի արժեքը։

Վլադիմիր Իլյիչը, որն արդեն գիտեր եղբոր մահվան մասին, շարունակում էր հանձնել քննությունները։ Եվ հանձնում էր փայլուն կերպով։ Գիմնազիայի դիրեկտորը չկարողացավ մեդալից զրկել «պետական հանցագործի» եղբորը։

Վլադիմիր Ուլյանովի ոսկե մեդալին նայելիս ահա թե ինչ հիշեցին այն ընկերները, որոնք պետք է մեդալն ուղարկեին ձուլարան։

Չէ՞ որ այդ մեդալը նա ստացել էր ոչ միայն ուսման առաջադիմության, այլև արիության ու տոկունության համար։

— Ինչքա՞ն է քաշը,— ի վերջո հարցրեց աշխատակիցներից մեկը։

— Երեսուն գրամ մաքուր ոսկի,— պատասխանեց մյուսը՝ նայելով անդորրագրի համապատասխան սյունակին։

— Ինչ գնով էլ լինի՝ պետք է երեսուն գրամ ոսկի ճարել,— եղավ վճիռը։

Եվ նրանք այդ մասին պատմեցին իրենց տանեցիներին, ընկերներին ու հարազատներին։ Ու մեջտեղ եկան ոսկեղենի վերջին մնացորդները։ Լենինի մեդալը փրկելու համար ոչ ոք չխնայեց իր վերջին հոգեպահուստ ոսկին։

# ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՈՒԿՐԱԻՆԱՆ








Ուկրաինան մեր Միության ամենածաղկուն հանրապետություններից է: Հիսուն տարվա ընթացքում ուկրաինական ժողովուրդը չտեսնված հաջողությունների է հասել: Բավական է ասել. որ սովետական իշխանության տարիներին հանրապետության մեքենաշինության ու մետաղամշակման արտադրանքի ծավալը աճել է 400 անգամ, էլեկտրաէներգիայինը՝ 186 անգամ. և 8 օրում Ուկրաինան տալիս է այնքան արդյունաբերական արտադրանք. որքան արտադրվել է 1913 թվականի ամբողջ տարում:

Ուկրաինական հանրապետությունը հարուստ է ոչ միայն հացով. ճակնդեղով և ուրիշ սննդամթերքներով. այլև ածուխի. երկաթի. չուգունի ու պողպատի արտադրության անսպառ պաշարներով: Թե՛ գյուղատնտեսությունը և թե՛ արդյունաբերությունը այստեղ զինված են ժամանակակից բարձր տեխնիկայով: Այսօր ուկրաինական հողերն են հերկում 270 հազար տրակտոր. մոտ 60 հազար կոմբայն լողում են հացահատիկի անծայրածիր ծովերում և հնձելով չեն կարողանում սպառել առատ բերքը:

Թեև հիտլերյան հորդաները հրդեհեցին ու ավերեցին Կիևը. Խարկովը. Օդեսան և այլ ծաղկած քաղաքներ ու գյուղեր. բայց ուկրաինական հերոս ժողովուրդը կարողացավ արագ կերպով վերականգնել ավերված երկիրը և առաջ ընթանալ տիտանական քայլերով: Եվ այժմ Ուկրաինան իր կուլտուրական ու տնտեսական մակարդակով նույնիսկ առաջ է անցել եվրոպական շատ երկրներից: Նախահեղափոխական Ուկրաինայում ժողովրդի 70 տոկոսը անգրագետ էր. այժմ յուրաքանչյուր 100 աշխատողից 54-ը ունի միջնակարգ կամ բարձրագույն կրթություն, իսկ միայն մասնագետների թիվը հասնում է երկուս ու կես միլիոնի:



# ՀԱՐՍՏԱՑՐԵՔ ՁԵՐ ՀՈՂԸ

*ՄԻԽԱՅԻԼ ՍՏԵԼՄԱԽ*

Տարեցտարի ավելի շռայլ ու բերրի է դառնում մեր հողը. նույնիսկ այն տեղերում, ուր նրա մակերեսը դարեր շարունակ խանձված է եղել արևից ու ծածկված ավազներով, նոր ջրանցքներ են ճըղքվում, նոր գետեր են հոսում ու կյանքը ծաղկում է։

Իզուր չէ, որ մայր-հող ենք ասում։ Բայց հարազատ հողի արժանի զավակը լինելու համար, պետք է աշխատել, որպեսզի այդ հողն ավելի գեղեցիկ և բերքառատ լինի։ Մի՞թե բախտավորություն չէ, երբ ձեր ձեռքերը հերկում են դաշտերը, բարի հունդը ցանում հողի մեջ, այգիներ ու անտառներ են տնկում, մեղուներ խնամում, մշակում խաղողի որթը և բանջարեղեն աճեցնում։

Մինչև հիմա էլ ես միշտ հաճույքով եմ հիշում այն օրերը, երբ աշխատում էի կոլտնտեսային դաշտերում, հերկում էի, ցանում, հնձում և հավաքում բերքը։ Նույնիսկ ուսուցիչ դառնալուց հետո էլ ես ֆիզիկական աշխատանքով էի զբաղվում կոլտնտեսային դաշտերում։ Իսկ գարնանային ծառատունկը ինձ համար սովորույթ է դարձել։ Չկա այնպիսի տարի, որ ես մի քանի պտղատու ծառ չտնկեմ։

Հողի վրա աշխատելիս, պատանի բարեկամներ, դուք մեծ հաճույք կստանաք, կհարստացնեք ձեր սիրտն ու մայր-հողը։

# ԽՄԲԱԿԸ ՕԳՆՈՒՄ Է

Անձրև տեղա, քամի փչի, թե ձյունահողմ լինի, միևնույն է, առավոտյան ժամը իննին, ցերեկվա երկուսին և երեկոյան ութին Անդրկարպատյան Կամենսկոյե գյուղի միջնակարգ դպրոցի աշխարհագրական հարթակին են գալիս երկու պիոներ։

Ահա, փայլուն աստիճաններով բարձրանալով, Անյա Կուզման բաց է անում օդերևութաբանական տնակի դուռը։ Մինչ Անյան այստեղ պահվող սարքերի մեջ գրանցում է օդի խոնավությունը և ջերմաստիճանը, Սաշա Զեգիլը անձրևաչափի օգնությամբ որոշում է գիշերվա տեղումների քանակը։ Այժմ պետք է որոշել քամու ուժը և ուղղությունը։

# ԱՆՏԱՌԱՅԻՆ լուրեր

*ՎԻԿՏՈՐ ԿՈԺԵՎՆԻԿ*



Լսե՞լ եք դուք,
Այս առավոտ
Մեր անտառի բացատում մեծ
Մայր շլդիկը մի կոճղի մոտ
Երեք փափլիկ ձագեր հանեց։

Ձագուկներն այդ թմբլիկ, կլոր,
Թավալվեցին գլոր-գլոր։
Ջրնկնե՞ն հանկարծ ճանկը ցիցի,
Կամ թե չար բուն չթռցնի՞։

Լսե՞լ եք դուք,
Կաղնուտում կից,
Ուր ծյուն կա դեռ կիսահալած,
Արդեն ծաղկած ուռիներից
Ոսկե ամպիկն է կախվել ցած։

Լավ նշան է ուրեմն դա,
Աչքերը լույս սկյուռների.
Կաղնին առատ բերք կբերի,
Բայց ի՛նչ կաղին,
Գիտե՞ք այդ դուք, —
Ոսկեկնե՜պ, ոսկեմիջու՜կ։

Իսկ լսե՞լ եք
Մի ուրիշ բան,
Մի նորություն հիանալի։
Ո՜նց չենք լսել, գիտե՛ք ինչքան
Նորություններ անտառում կան։
Նորություններ անտառային
Շրջում են միշտ կաչաղակի
պոչի ծայրին։

Չորս տարի է, ինչ գործում է Բերեզովսկի շրջանի Կամենսկոյե գյուղի միջնակարգ դպրոցի պատանի աշխարհագետների խմբակը: Շատ բան իմացան, շատ բան սովորեցին այդ ժամանակամիջոցում հինգից-ութերորդ դասարանցիները:

Բոլոր սարքավորումները և դիտողական հարմարանքները պատրաստում են իրենք՝ պիոներները: Օրինակ՝ վերցնենք օդերևութաբանական հարթակի սարքավորումները: Արևի դիրքի բարձրությունը որոշելու սարքը պատրաստել է Յուրա Պանկանինեցը, ցերեկվա և գիշերվա տևողությունը որոշող սարքը՝ Սաշա Չեգիլը, իսկ տեղի ռելիեֆի մակետը՝ բարձրավանդակներով, հարթավայրերով, ծովերով, լճերով ու գետերով, պատրաստել են խմբակի բոլոր անդամները միասին:

Բայց ամենից շատ խմբակի անդամները հպարտանում են եղանակի դիտումների ամենամսյա օրացույցով: Իհարկե, կհպարտանան: Տարիներ շարունակ օրացույցը զարդարում է ցուցահանդեսը:

Օդերևութաբանական մատյանից վերցրած տվյալներից բացի, օրացույցի մեջ գրի են առնվում նաև կենդանի բնության ու կլիմայական պայմանների վերաբերյալ դիտողություններ. օրինակ՝ թռչունների վերադարձի ժամանակը, այգիների ծաղկման սկիզբը, մրգերի ու պտուղների հասունացումը, եգիպտացորենի բերքահավաքը և այլն:

Կատարված հետազոտումների հիման վրա, խմբակի անդամները, տասնօրյակը մեկ անգամ, օդի ճնշման, ջերմաստիճանի, խոնավության գրաֆիկներ են կազմում, ամպամածության դիագրամներ են գծում և քամիների վարդ նկարում:

Այդ օրացույցը շատ կարևոր է եղանակի կանխագուշակման և մարզի կլիմայական փոփոխությունները գրանցելու համար: Պիոներների հավաքած տեղեկությունները տասնօրյակը մեկ անգամ ուղարկվում են Ուժգորոդ՝ Անդրկարպատյան օդերևութաբանական բյուրո, այստեղից էլ՝ Կիև:

Շատ հետաքրքիր ու օգտավետ են անցնում խմբակի շաբաթական մեկ անգամ անցկացվող պարապմունքները: Հաճախ երեխաները հանդես են գալիս հռչակավոր ճանապարհորդների և աշխարհագրական գյուտերի մասին զեկուցումներով: Խմբակի ղեկավարն է Միխայիլ Վասիլևիչ Շերեգիյը:

Իսկ որքան հետաքրքիր խաղեր, էքսկուրսիաներ են կազմակերպում պատանի աշխարհագետները: Բոլորը հիշում են նրանց Անդրկարպատյան արշավները, ուղևորությունները Օդեսա և Ուկրաինայի մայրաքաղաք Կիև:

Շատ ծրագրեր ունեն խմբակի անդամները: Այս ուսումնական տարում նրանք պատրաստվում են լրացնել իրենց աշխարհագրական հարթակը նոր դիտողական հարմարանքներով: Հավանաբար ամենից հետաքրքիր կլինի հրաբխի և հիդրոէլեկտրակայանի գործող մոդելների պատրաստումը:

Խմբակը երեխաներին հարստացնում է աշխարհագրական գիտելիքներով, նպաստում ուսման որակի բարձրացմանը:

Լ. ԶԵԼԵՆԵՎՍԿԱՅԱ



# ԿՈԼԵԿՑԻՈՆԵՐԸ



Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

Երբ Օմելկոն տեսնում է մեզ,
Մոտ է վազում ու պարծենում.
— Թռչունների սարսափն եմ ես,
Բներից միշտ ձու եմ հանում:

Ասում է նա ու ձեռքը աջ
Դեպի գլխարկն է տանում շուտ
Եվ դուրս հանում վստահ ու քաջ
Թռչնի ձվեր զոլ ու պուտ-պուտ:

— Կոլեկցիա է սա լինելու,
Որ տեսնելիս նախանձեք ինձ:
Ես գնում եմ ձու բերելու՝
Այգիներից ու դաշտերից:

Օմելկոյի ինչի՞ն է, թե
Պիրոլի ձայնն էլ չի գալիս,
Որ գտնելով բույնը ավեր,
Սոխակներն են նստած լալիս:

Բայց նա երբեք չի նշմարում,
Թե ինչեր է անում անվերջ.
Թռչունների երգն է մարում
Նրա դաժան ձեռքերի մեջ:

Թարգմ. Գ. ՎԻՐԱՊՅԱՆԸ



# ՖԻԶԻԿԱՅԻՑ ՀԻՆԳ



ՄԻՔԱՅԵԼ ՇԱԹԻՐՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

— Սահակի՜ն, տվեք Սահակի՜ն...— գոռում էին խաղադաշտի շուրջը կանգնած դպրոցականները:

Բղավում էին թե՛ մեկ, թե՛ մյուս թիմի կողմնակիցները, և միայն Կարոն էր լռում, խանդոտ հետևելով խաղի ընթացքին: Նա տեսավ, թե ինչպես իրենց թիմի ձախ հարձակվող Արան փոխանցեց գնդակը Սահակին, և սա, ճարպիկ խույս տալով հակառակորդի պաշտպաններից, նետվեց դեպի դարպասը... Հանդիսականները մի պահ քարացան, երբ նա դուրս եկավ դարպասի մոտ և երես առ երես հանդիպեց դարպասապահին: Բայց Սահակի ուժեղ հարվածը շեղ էր, և գնդակը դարպասի ձախ ձողափայտի մոտով դուրս եկավ դաշտից:

«Հը՜մ, կենտրոնական հարձակվողի՜ս տեսեք,— չարախնդորեն մտածեց Կարոն,— ինչպիսի՜ գոլ կորցրեց...»

Սակայն նրա այդ ակնհայտ գոհունակ տրամադրությունը երկար չտևեց: Հազիվ էր խաղը վերսկսվել, երբ գնդակը նորից անցավ Սահակին, և սա դարձյալ սկսեց «ֆինտերով» մոտենալ հակառակորդի դարպասին: Արդեն տուգանային հրապարակում նա փոխանցեց գնդակը ձախ՝ Արային, և երբ պաշտպանները վազեցին այն կողմ, ետ ստացավ ու այս անգամ դիպուկ հարվածով գնդակը ուղարկեց ուղիղ դարպասի վերին աջ անկյունը:

Շուրջը թնդաց հանդիսականների բարձր և ցնծագին «ուռա՜», այնպես, որ հարևան տան կտրին նստած աղավնիները, թևերը թփթփացնելով, վախեցած վեր սլացան... Եվ այդտեղ Կարոն այլևս չդիմացավ. շուռ եկավ ու հեռացավ խաղադաշտից: Գնաց, թեպետ ինքը պահեստի խաղացող էր և ամեն րոպե նրան կարող էին խաղի մեջ մտցնել...

...Ոչ, Կարոն ընդհանրապես նախանձ տղա չէր: Նա կարող էր ուրախանալ ամեն մեկի հաջողությամբ, լիներ դա ուսման մեջ, թե սպորտում... Ամեն մեկի, բացի Սահակից, որը վերջերս նրա «քիթն էր կանգնել»: Այո, այն օրից, ինչ Սահակը փոխադրվել է Կարոյենց դպրոցը, նա ասես մտքին դրել էր ամեն ինչ անել Կարոյի ջգրու: Եթե առաջ Կարոն համարվում էր դասարանի «առաջին ֆիզիկոսը», ապա Սահակը, գալուն պես, սկսեց մղել նրան երկրորդ տեղը: Դասը պատմելիս նա երբեք չէր բավարարվում դասագրքի նյութերով, այլ միշտ «օյիններ էր զարդարում», ավելացնում էր վրան հայտնի չէ որտեղից քաղած տեղեկություններ:

— Խելքից դուրս բանում է, է՜լի,— շշնջում էր Կարոն կողքին նստած Մանիկի ականջին:

Բայց ֆիզիկայի դասատուն՝ ընկեր Մարտիրոսյանը, ըստ երևույթին, այլ կարծիքի էր:

— Այդպես, այդպես...— ասում էր նա մռայլ դեմքով:— Երևում է, որ դու հետևում ես ֆիզիկայի նորություններին, Մալյան Սահակ... Ցավոք սրտի, ստիպված եմ քեզ նշանակել «հինգ»...

Իսկ ո՞վ չգիտեր ընկեր Մարտիրոսյանի այդ սովորությունը: Երբ նա գոհ էր լինում աշակերտի պատասխանից, ապա ձևացնում էր, իբր վշտացած է, և մրմնջում էր. «Բա սա եղա՞վ, Կարլեն Մեսրոպյան... Դու նորից ստիպում ես ինձ «հինգ» նշանակել քեզ, մինչև ե՞րբ է շարունակվելու սա...»

Իսկ երբ աշակերտը վատ էր պատասխանում, ընկեր Մարտիրոսյանը քաղցր ժպտում էր նրան և նույնիսկ շոյում գլուխը. «Ապրես, ա՛յ, ապրես, Հարութիկ ջան, մխիթարեցի՜ր... Ոչ մի ջանք չխնայեցիր՝ մի լավիկ «երկուսի» արժանանալու...»



Իսկ դրանից ավելի ցավալի էր, որ Սահակն ըսկսեց նսեմացնել Կարոյի փառքը ֆուտբոլի դաշտում: Այո, Կարոյի համար հատկապես թանկ էր դպրոցի առաջին կենտրոնական հարձակվողի իր հեղինակությունը: Հպարտ էր, որ պատասխանատու խաղերից առաջ, երբ ընտրում էին հավաքա-

կան թիմի անդամներին, իր թեկնածությունը անցնում էր առանց քննարկման։ Բայց ահա եկավ այդ Սահակը և...է՜հ, ինչ հարկ կա պատմելու, թե ինչ եղավ հետո։ Չէ՞ որ հիմա նա կանգնած է դրսում, որպես «պահեստի խաղացող», մինչդեռ Սահակը դաշտում գոլեր է խփում, արժանանալով այն ծափերին և գովեստներին, որոնք մի ժամանակ Կարոյին էին բաժին ընկնում... Ուրեմն, ի՞նչ զարմանալու բան կա, որ Կարոն չդիմացավ և հեռացավ մարզահրապարակից...

Մյուս առավոտյան նա ուշացավ դասերից... Հակառակի պես առաջին երկու ժամերը ֆիզիկայի դաս էր, և երբ Կարոն դասարան մտավ, ընկեր Մարտիրոսյանը դիմավորեց նրան ուրախ բացականչություններով.

— Ա՜, վերջապես եկա՞ր... Իսկ ես կարոտել էի քեզ, սիրելի Կարո... Վազե՞լ ես, անշուշտ... Դե գնա նըստիր տեղդ, մի քիչ շունչ քաշիր և եթե մտքեր ունես՝ հավաքիր, որ հետո գաս գրատախտակի մոտ...

Գրատախտակի մոտ Կարոն, առաջին անգամ իր կյանքում, վատ պատասխանեց դասը. նախորդ օրը, ֆուտբոլից վերադառնալով, նա փորձել էր պարապել, բայց մտքերն ուրիշ տեղ էին և կարդացածը գլուխը չէր մտնել...

Ընկեր Մարտիրոսյանը մի պահ կկոցած աչքերով նրան էր նայում, կարծես ուզում էր հասկա-



նալ, թե ինչ է կատարվում այս տղայի հետ։ Հետո, ըստ իր սովորության, ժպիտ ձևացրեց դեմքին.

— Հը՜մ, հասկանում եմ, հասկանում, թե որն է քո մտադրությունը... Դու ուզում ես անպայման «երկու՞» վաստակել... Բայց ես կարծածդ միամիտը չեմ, սիրելի Կարո, որ այդպես հեշտ ընկնեմ քո լարած թակարդը... Դնա նստիր տեղդ։ Եվ հիշիր, որ վաղը դու պատասխանելու ես և՛ այսօրվա, և՛ նոր դասը...

Դասամիջոցի զանգը տալուն պես նա դուրս թըռավ միջանցք, որպեսզի ընկերները իրեն չմոտենան, չխոսեցնեն։ Բայց դա նրան չհաջողվեց։ Հենց աստիճաններից քիչ հետո նրան հասավ Արան.

— Կարո՛, կաց... — Եվ երբ Կարոն կանգ առավ՝ հարցրեց. — Դու գիտե՞ս, որ այսօր մենք խաղում ենք 68-րդ դպրոցի թիմի հետ...

— Հետո՞ ինչ, — մթնած, Արայի երեսին նայելով, հարցրեց Կարոն։

— Ո՞նց թե՝ «հետո ինչ», ախր դու կենտրոնական հարձակվող ես...

— Բա ձեր Սահա՞կը, — ասաց Կարոն։

Ու իսկույն տեսավ Սահակին, որը կաղին տալով իրենց էր մոտենում։ Երևի նա էլ էր իսկույն դուրս եկել դասարանից, բայց չէր կարողացել հասնել իրեն։

— Ես երեկ խաղի վերջում ոտքս մի թեթև վընասեցի, — մեղմ ժպտալով ասաց նա։ — Դու ու՞ր էիր գնացել, ա՛յ տղա։ Մենք ուզում էինք քեզ խաղի մեջ մտցնել, բայց չգտանք։ Ախր այդ տասնութերորդցիները խաղի վերջում բոլորովին հալից ընկել էին, ու եթե դու գայիր իմ տեղը՝ երևի հաշիվը կլիներ ոչ թե երեքով-երկու, այլ հինգով-երկու...

— Շատ պե՜տքս էր... Գործ ունեի, գնացի...

— Վա՞յ... զարմացավ Սահակը։ -Էդպես բան կլինի՞, տո...Ախր պահեստի խաղացող էիր...

— Ես պահեստի խաղացող լինելու սովոր չեմ...— իր սև աչքերը նրա վրա փայլեցրեց Կարոն։

Սահակը մի քայլ ետ արեց ու մի պահ կարծես ուսումնասիրում էր Կարոյին։ Հետո ասաց դանդաղ.

— Ուրեմն, դու էդ տեսակ ընկեր ես, հա՞...

Նա հանկարծ կտրուկ շրջվեց և, կաղին տալով, բայց արագ գնաց միջանցքով դեպի իրենց դասարանը։ Սակայն Արան չէր ուզում հեռանալ։ Երևում էր, որ նա էլ է բարկացած և, ուրիշ խոսք չգտնելով, զայրացած ասաց.

— Թո՛ւ, անամոթ...

Կարոն մի պահ մնաց լուռ կանգնած, հետո մի քանի քայլ արեց, հասավ անկյունին, որի ետև աստիճաններն էին, ուզում էր իջնել բակ, երբ հանկարծ տեսավ ընկեր Մարտիրոսյանին։

Նա կանգնած էր պատին հենված ու ծխում էր։ Ծխում ու դարձյալ կկոցած, զննող հայացքով նայում էր Կարոյին։ «Լսե՞լ է, — սարսափով մտածեց Կարոն։ — Լսե՞լ է մեր խոսակցությունը, թե՞ չէ...»

— Դու բա՞կ ես ուզում իջնել, — հանկարծ հարցըրեց ընկեր Մարտիրոսյանը շատ հանգիստ։ — Ուշ է, հիմա զանգը կտա, գնա դասարան...

— Լավ... — ընկած ձայնով պատասխանեց Կարոն և ետ դարձավ։

* * *

Մինչև նոր դասը բացատրելը ես կուզենայի կանգ առնել մի կարևոր հարցի վրա,— ասաց ընկեր Մարտիրոսյանը զանգից հետո։— Պետք է խոստովանեմ, որ ամենից շատ աշխարհիս երեսին «պաշտում» եմ այն մարդկանց, ովքեր ուզում են ամեն հարսանիքում հարս լինել և ամեն թաղմանը՝ մեռել... Նրա սուր աչքերը սահեցին աշակերտների դեմքերով, ոչ որի վրա կանգ չառնելով։— Չե՞ք հասկանում... Այո, կան այդպիսի մարդիկ, ովքեր ուզում են բոլոր դեպքերում իրենք լինեն ուշադրության կենտրոնում, որ բոլորն իրենցով զբաղվեն և միայն իրենց արածն են համարում լավ ու անհրաժեշտ...

Կարոն, որ իր նստարանից ուշադիր հետևում էր ուսուցչի խոսքերին, հանկարծ կարմրեց. «Իհարկե, լավ է... Ու հիմա վրա կպրծնի ինձ...»

— Դուք երևի կհարցնեք, թե ու՞մ նկատի ունեմ ես,— շարունակեց ընկեր Մարտիրոսյանը, այդպես էլ ոչ մի անգամ չնայելով Կարոյի կողմը։— Ինչ արած, պետք է ազնվորեն խոստովանեմ՝ ինձ... Այո՛, այո՛, այդ ե՛ս եմ համարել իմ առարկան՝ ֆիզիկան, ամենից կարևորը, պահանջել եմ աշակերտներից, որ առաջին հերթին սովորեն ֆիզիկայի դասերը... Առանձնապես ես դեմ եմ եղել սպորտին ու, հատկապես, ֆուտբոլին... Գիտե՞ք, թե որն էր իմ ամենասիրած հեքիաթը... «Լինում է, չի լինում, մի թագավոր է լինում։ Էդ թագավորը երեք տղա է ունենում. երկուսը՝ խելոք, իսկ երրորդը՝ ֆուտբոլիստ...» Ընկեր Մարտիրոսյանը բարձրացրեց ձեռքը, որպեսզի վերջ տա աշակերտների ծիծաղին, և շարունակեց.— Այո, ես չգիտեմ ինչու, համոզված էի, որ սպորտի այդ ձևը, զարգացնելով մարդու ոտքերը, պետք է անպայման վնասի գլխին... Ճիշտ է, հենց ձեր դասարանում ես ունեի իմ այդ կարծիքը հերքող մի փայլուն օրինակ. Կարո Բաղդասարյանը և՛ լավ ֆիզիկոս էր, և՛ լավ ֆուտբոլիստ, բայց ես համարում էի, որ դա բացառիկ դեպք է... Մտածում էի այդպես, մինչև մեզ մոտ եկավ ևս մեկը՝ Սահակ Մալյանը...— Ուսուցիչը հանկարծ դարձավ դեպի երկու հիշված աշակերտները։

— Բաղդասարյան, ոտքի՛... Մալյան, ոտքի՛...— Ու երբ տղաները ոտքի ելան, հարցրեց.— Մալյան, դու երեկ մասնակցե՞լ ես 18-րդ դպրոցի հետ խաղին...

— Այո, ընկեր Մարտիրոսյան։

— Իսկ դու՞, Բաղդասարյան։

Կարոն լուռ թափահարեց գլուխը։

— Տեսնու՞մ եք,— դասարանին դիմեց ուսուցիչը։— Նա, ով ֆուտբոլ էր խաղացել, այսօր լավ պատասխանեց ֆիզիկայի դասը, իսկ նա, ով չէր մասնակցել խաղին, այսօր, մեղմ արտահայտված՝ «բռնձեց» դասը... Ի՞նչ է նշանակում սա։ Անշուշտ այն, որ ֆիզիկայի ու ֆիզիկական կուլտուրայի մեջ ինչ-որ կապ կա... Ահա այդ օրինաչափ կապը հայտնաբերելով, ես հիմնովին փոխել եմ իմ նախկին վերաբերմունքը դեպի ֆուտբոլը, և գոնե այս երկու աշակերտների թվանշանները կախված կլինեն ոչ միայն դասից, այլև ֆուտբոլից...— Այստեղ ընկեր Մարտիրոսյանը նորից դիմեց Սահակին.— Մալյան, ձեր թիմը այսօր կարծեմ խաղում է 68-րդ դպրոցի հետ, այդպես չէ՞...

— Այո, ընկեր Մարտիրոսյան...

— Նկատի ունենալով, որ Կարո Բաղդասարյանը այսօր ֆիզիկայի դասը չէր պատրաստել, պարզ է, որ նա չի կարողանա լավ խաղալ։ Ուրեմն, այսօր խաղում ես դու, հասկացա՞ր։ Եվ եթե հանկարծ տանուլ եք տվել խաղը՝ «երկուսն» ապահովված է։ Հասկացա՞ր։



ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ

Մայրիկ, իմ քաղած մանուշակները,
Տես, թառամում են,
Թոշնել են նրանց տերևիկները,
Եվ աչիկները, նայի՛ր, խամրում են...
Ինչու՞, չէ՞ որ ես ջրում եմ նրանց
Ամեն առավոտ։
Մի՞թե ծաղիկներն անտառից բերված
Տխրում են ինձ մոտ։

— Այո. տխրում են, ինչպե՞ս չտխրեն,
Երբ կարոտում են
Թփերի զովը,
Սարերի հովը,
Գետի կարկաչը,
Թավիշ կանաչը
Եվ մարգագետնի լայնությունն ազատ.
Մի խոսքով՝ տունը իրենց հարազատ...

— Բայց ախր իմ ոտքը վնասված է, ընկեր Մարտիրոսյան,— բողոքեց Սահակը։

— Ոչինչ չգիտեմ,— խիստ ասաց ուսուցիչը։— Ես ինքս կգամ խաղը նայելու, և, վա՜յ քեզ, եթե վատ ես խաղացել... Նստեցեք երկուսդ էլ, անցնում ենք դասին...

* * *

Դասերից հետո Կարոն դուրս եկավ փողոց և մի պահ կանգ առավ։ Ուշքն ու միտքը խաղադաշտի կողմն էր, սակայն նա ստիպեց իրեն քայլել դեպի տուն։ Այո, խաղադաշտում Կարոն անելիք չուներ. չէ՞ որ ընկեր Մարտիրոսյանը պարտադրել էր, որ այսօր անպայման Սահակը խաղա։ «Կարո Բաղդասարյանը «քրնձեց» ֆիզիկայի դասը, ուրեմն՝ չի կարողանա լավ խաղալ...»— ասաց նա։ Դե որ այդպես է, թող Սահակը խաղա։ Թող խաղա իր վնասված ոտքով, և տեսնենք, թե ինչ են տանելու մերոնք։ Իսկ ես կգնամ դասերս կպատրաստեմ, և վաղը կերևա, թե մեզնից ո՞վ է «քրքրնձել» ֆիզիկայի դասը...

Բայց հետո՞։ Ինչպես նա փաղն այդ պատճառով «երկու» կնշանակի Սահակին։ Ոչ, այդպիսի անարդարություն նա երբեք չի արել և չի անի։ Ուրեմն, ի՞նչ էին նշանակում նրա խոսքերը...

Կարոն հանկարծ զգաց, որ կարմրում է մինչև ականջները, և նոր միայն հասկացավ ուսուցչի ասած նախադասության ամբողջ իմաստը. «Ցանկանում է ամեն հարամիքին հարս լինել և ամեն թաղմանը՝ մեռել...»

Հետո նա պոկվեց տեղից ու վազեց դեպի սպորտհրապարակ։

Իսկ մտքում միայն մի բան կար. «Հարկավոր է հասնել, քանի խաղը դեռ չի սկսվել... Շու՛տ, շու՛տ...»

* * *

— Կարո Բաղդասարյա՛ն, գրատախտակի մո՛տ,— սառը դեմքով ասաց ընկեր Մարտիրոսյանը։ Եվ երբ մոտեցավ գրատախտակին՝ հարցրեց.— Դասդ սովորե՞լ ես։

Կարոն լուռ գլխով արեց։

— Իսկ երեկվա՞նը...

Կարոն դարձյալ գլխով արեց։

— Այդպե՜ս... Իսկ հիմա բարի եղիր պատասխանել,— նույն մռայլ տեսքով շարունակեց ընկեր Մարտիրոսյանը։— Դու գիտե՞ս, թե երկու ինչպիսի մեծ ոճիր ես գործել...

Դասարանը շունչը պահեց, իսկ Կարոն զարմանքով նայեց ուսուցչին.

— Ի՞նչ ոճիր...

— Դեռ հարցնու՞մ ես... Նախ, որ երեկ ամբողջ դասարանի առաջ հայտարարեցի, թե դու չես կարող խաղալ, քանի որ դասդ չես պատրաստել, այնինչ դու եկար խցկվեցիր խաղի մեջ և երեք գրնդակ խփեցիր... Ուրեմն, դու բանի տեղ չե՞ս դնում ուսուցչիդ զարգացրած տեսությունը...

Դասարանը սկսեց ուրախ քրքջալ, իսկ ընկեր Մարտիրոսյանը շարունակեց.

— Երկրորդը. դու ընկերության որևէ զգացմունք ունե՞ս թե՞ չէ... Ախր երեկ ես ասացի Սահակ Մավյանին, որ նա՛ պիտի խաղա և, տանելու դեպքում՝ նրան կնշանակեմ «հինգ»։ Իսկ դու ի՞նչ արեցիր... Գնա տեղդ, Կարո Բաղդասարյան,— ավելացրեց նա։— Ես քեզ կնշանակեմ «հինգ»։

Դասարանի ընդհանուր ծիծաղի տակ Կարոն վերադարձավ իր տեղը և տեսավ, թե ինչպես Սահակը, անկեղծ հիացմունքով վերև է տնկել բութ մատը՝ հայտնի չէ, թե ում հասցեագրելով իր այդ գովասանական ժեստը՝ ընկեր Մարտիրոսյանի՞ն, թե՞ հենց Կարոյին։



արձր ջերմությամբ անկողին էի ընկել. վեցերորդ օրն էր, չէի ուտում ոչ մի բան, նույնիսկ մերժել էի հիվանդությունից առաջ իմ երազած կերակուրները: Քիչ եմ հիվանդացել կյանքում, և դրա համար էլ թանձր մի հոռետեսություն էր պատել ինձ:

Տանը մարդ չկար, իմ աչքերը պատահմամբ հանդիպեցին սենյակի կենտրոնում դրված սեղանի վրա, հավանաբար նոր բերված, թարմ մատնաքաշին, որի կողքին ձիթապտղի չորս շիշ կար:

Թարմ ու դեռևս տաք մատնաքաշի կողքին դրված «Ձիթապտղի յուղ»-ի շշերը ինձ, որտեղից-որտեղ, հեռացրին ներկայից, և ես հավանաբար բավական ուշ կգացի, որ երազում եմ:

Աչքերիս առջև առագաստանավեր էին և ծովի փրփրոտ ալիքներ, և ես կարծես բերանումս զգում էի ջրերի աղի համը, հետո ինձ թվաց, թե նավերին կուգահեռ թռչում են ճայերը, որոնք մերթ ընդ մերթ սլանում էին ցած և կտցահարում ծովի մակերեսը: Նրանք կորսվում էին մի պահ ալիքների մեջ, հետո թևերից թափ տալով ջրի կաթիլները, հաղթական բարձրանում վերև, և ես կարծես լսում էի նրանց թևերի ճողփյունը...

Չէի քնել, բայց... արթնացա, սենյակում կարծես թափանցիկ, կապո՛ւյտ, կապույտ մշուշ լիներ: Տենդոտ մոտեցա սեղանին և դողահար մատներով պոկեցի մատնաքաշից մի մեծ պատառ, մատներովս ճկմեցի սպիտակ միջուկը և վերցնելով ձիթապտղի յուղի շշերից մեկը, լցրեցի սարքածս փոսիկի մեջ, հետո կարծես փռում տապակած ճուտ լիներ առաջս կամ շամփուրների վրա բորբ կրակից նոր վերցված խորոված, այնպե՛ս կրքով, այնպե՛ս ախորժակով սկսեցի ուտել...

Ձիթապտղի յուղով թաթախված տաք-տաք մատնաքաշը...

Տնաշեն, կարծես մի մեծ բան լիներ:

* * *

Տարիներ առաջ էր, փոքր երեխա էի այն ժամանակ. ծանր ու անտանելի տիֆից նոր էի բուժվում: Հիվանդությունս, իմ անզգուշության պատճառով, կրկնվել էր ու սաստիկ հյուծել ինձ, ինչպես նաև մայրիկիս: Հույսը կտրել էին ինձանից. ասել էին՝ կմեռնի, բայց ահա ոտի էի կանգնում և մայրս ինձ ասում էր, որ դա կատարվել էր հրաշքով: «Հրաշքին» ականատես էր եղել ինքը:

«Մի առավոտ, լուսաբացից դեռ շատ առաջ,— պատմում էր մայրս,— մոտեցա պատուհանին, ամբողջ գիշերը սովորականի նման պառանցել էիր, որդյակ, իսկ ես հասել էի խելագարության սեմին: Ինչ կլիներ իմ վիճակը, եթե կորցնեի քեզ էլ, երկու զավակից և ամուսնուց հետո հիմա էլ դու, դա ահավոր անարդարություն կլիներ: Առաջին անգամ վրդովվել էի աստծու դեմ, կատաղել, բայց լաց էի լինում, էլի ապավինում նրա կորությանը, ըբ կատարվեց հրաշքը: Արևը դեռևս դուրս չէր եկել արևելքից, ինչ-որ մշուշ էր ծովում և հանկարծ ես ուղղակի, ինչպես քեզ էի տեսնում, հեռվում, ծովի վրա, այո, հենց ծովի վրա նշմարեցի նրան... Նա՝ հրեղեն մի չքնաղ աղջիկ էր ու քայլում էր թևերը պարզած դեպի ինձ, վարսերը ուսերից հորդում էին և իջնում ցած, դեղնավուն ալիքներով, սպիտակ զգեստ էր հագել մինչև ոտները հասնող, իսկ ոտները... մերկ էին:

Նա ինչ- որ բաներ էր ուզում հասկացնել ինձ: Ես մեխվել էի տեղումս ու վախենում էի շարժվել: Միանգամից դողը պատեց մարմինս. չլինի՞ եկել է քեզ հավիտյան բաժանելու ինձանից, և խելագար ճիչով դարձա, ետ եկա սնարիդ մոտ, և ինչ, դու արթնացար ու մրմնջացիր...

— Մայրի՛կ...

Դա անցնող քառասուն օրերի ընթացքում քո առաջին բառն էր:

Ես պոռթկուն լաց եղա, իջել էր ջերմությունդ, իսկ դրսում օրը մեղմիկ լուսանում էր...»




«Հրաշքի» այդ պատմությունը հիվանդությանս օրերին իմ մանկական ուղեղի վրա տենդոտ տպավորություն էր գործել: Ես ծովի հետ անմիջական իմ մտերմությունը հազիվ էի սկսել, երբ ընկա անկողին: Մենք նոր էինք փոխադրվել ծովամերձ այդ տունը: Ծովը թվում էր ինձ ամենագեղեցիկը բնության պարգևներից: Ես երկյուղախառն սիրով էի նայում նրան, կապույտի այդ ամենազոր իշխանությանը, և հիմա նրա միջից դուրս է գալիս մի չքնաղ աղջիկ, գլխին՝ ոսկեփայլ կիսալուսին...

Չէ, ես հենց որ ոտի կանգնեմ, մտածում էի, գիշերները կլուսացնեմ, մինչև տեսնեմ նրան, չէ՞ որ նա ինձ համար էր եկել, և երբ մեծանամ, անպայման երախտագիտության փոխարեն՝ ոսկյա կոշիկներ կնվիրեմ նրան, որպեսզի բոկոտնման չգա... կապույտ ջրերում:

* * *

Եվ այսպես, ես հազիվ տեղից շարժվելու մի քիչ ուժ գտել, առանց ասելու իսկական շարժառիթը մորս,

խնդրում էի նրանից ինձ տեղափոխել պատուհանի մոտ: Նա վարանում էր. բայց հետո վիճում է փաթաթելով մարմինս հաստ վերմակների մեջ, գրկում և տանում նստեցնում: Դեռևս ես ոչինչ չէի ուտում, դժվարությամբ խմում էի մի բաժակ կաթը և ծամածռում դեմքս: Նույնիսկ գլուխս վզիս վրա ուղիղ պահելու կարողությունից զուրկ էի. տնքում էին հոդերս, բայց

*Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ*



որքան կարելի է ջանում էի աչքերս պահել ծովի վրա...

Բայց մի օր, երրորդ թե չորրորդ օրը, երբ ես հուսահատվել էի արդեն, իսկապես հեռվից նշմարեցի, որ մի հսկա կանգված աշխատում է ճեղքել մշուշը: Փակեցի աչքերս՝ հրեղեն աղջկա երազով: Վաղ առավոտ էր, ես աղմուկ լսեցի, որով լցվեց փողոցը, և փոքր նավամատույցը լցվեց մարդկանց հոծ բազմությամբ: Եվ ես տեսա, որ քիչ առաջ մշուշի մեջ նկատածս մի առագաստանավ է, որն հանդարտ ճեղքելով ջրերը, առաջանում է դեպի քարափ: Ինչ-որ մարդիկ հավաքում էին առագաստները, կապում կայմերին, իսկ ոմանք՝ թիավարում: Իմ երևակայության առջև մորս պատմածը և այժմյան իմ տեսածը միախառնվել էին կարծես... Այնտեղ, նավի վրա, կար ավելի քան վեց-յոթ մարդ, որոնք արևի նորահայտ ճառագայթների տակ կարծես ծիրանի զգեստներ ունեին հագած: Ինձ մի պահ թվաց, թե ես տեսա նույնիսկ աղջկան ու փակեցի աչքերս:

Չգիտեմ ինչքան ժամանակ էր անցել, երբ կարմանքով նկատեցի, որ «ծիրանի զգեստներ հագած» այդ մարդիկ, սովորական ձկնորսներ են, լայնալանջ կրծքերով, հին ու մաշված հագուստներով և մայլակալած դեմքերով: Քարափը լիքն էր մարդկանցով և նրանք ագահ աչքերով դիտում էին նավը, այնտեղ վխտացող ձկներին... Ես զգում էի, որ փայտյա նավամատույցը ճռճռում էր մարդկանց ոտների տակ, ես տեսնում էի, որ գոհ ու երջանիկ էին այդ ձկնորսները, ծովի այդ աղասպելական թվացող մարդիկ, որ ահա բազում գիշերների միջից ճեղքելով մութը՝ քնից նոր արթնացած այդ բազմությանը բերել էին ծովի բարիքները: Ես ներքուստ նախանձեցի նրանց:

Ես զգում էի, որ նրանք խոսում են բարձրաձայն, ծիծաղում լիաթոք և սրբում ճակատների վրա պսպղացող քրտինքը կամ գուցե աղի ջուրը ծովերի... Ես չէի իմանում, բայց տեսնում էի ճայերին, որոնք աղեղնաձև սլանում էին հենց այդ մարդկանց գլխավերևում, ճախրում էին առագաստանավի կայմերի շուրջը և մի պահ կուգահեռ սլացքից հետո ուղիղ խորասուզվում ջրի մեջ: Չգիտեմ ինչպես, սակայն ես զգում էի ծովի աղի բույրը, և շրթներիս վրա ալիքների դառն համն էր.

— Բալիկս, հոգնեցիր. քեզ տանեմ ու պառկիր անկողնում,— ասաց մայրս: Ես նայեցի նրան: Նրա աչքերի տակ կապույտ, մուգ կապույտ երիզներ էին գծագրվել, հետո, հավանաբար երազում պիտի լինի, ես տեսա ոսկյա, դեղձան, մինչև կոճերը իջնող վարսերով, լրիվ սպիտակներ հագած, երկարահասակ մի աղջիկ, գլխին՝ մարգարտյա մի թագ, որ փայլփլում էր կուրացուցիչ փայլով: Նա քայլում էր հայելանման ծովի վրայով, քայլում էր հանդարտ, ոտքերին՝ ոսկեզօծ կոշիկներ, որոնց վրա աստղեր էին պսպղում: Նա ժպտաց ինձ, մոտեցավ և ափը դրեց ուսիս...

— Չե՞ս խմի կաթդ:— Մայրս էր.— Խմիր, կաթ եմ բերել որդիս...

Ես ափսոսացի, որ քնել եմ անկողնում. դա հոգնությունից էր:

— Մայրիկ,— ասացի,— խնդրում եմ, տար ինձ կրկին պատուհանի մոտ:

— Հերիք է այսօրվա համար...

— Ոչ, ես ուզում եմ տեսնել նրան:

— Ո՞ւմ:

— Այն չքնաղ աղջկան:

Զգացի, որ մայրս գունաթափվեց, սարսռաց ամբողջ մարմնով և գրկելով ինձ՝ բերեց պատուհանի առջև: Հետո ափը դրեց ճակատիս, ոչ, ես ջերմություն չունեի, նայեցի ցած, քարափը դատարկվել էր, նստել էին նրանք ծղլապատիկ փայտյա նավամատույցի վրա, նավի կողքին, և նրանց առաջ, երեք, թե չորս կիլոյանոց հացեր կային, հետո ձիթապտղի յուղի շշեր: Նրանք պոկում էին հացերից մեծ ու անկանոն չեր-

տեր, ամուր մատներով ճկմում սպիտակ հացի միջուկը և գոյացած փոսիկների մեջ լցնում յուղը, հետո ափով ճմլում և գցում էին բերանները, ափը պահելով կզակի տակ: Կոշտ ու առնական նրանց ափերի մեջ թափվում էր թարմ հացից պոկված մանր փշրանքը՝ խառնված յուղի կաթիլներին: Հետո երբ ծամված էր լինում գլխավորը, ափերը բարձրանում էին վերև և փշրանքները նետում բերանի մեջ: Դա արվում էր անհուն մի գուրգուրանքով: Ես նշմարեցի, որ նույնիսկ հացի շերտերը պոկելիս ուշադիր էին փշրանքների նկատմամբ: Ինձ համակեց ապրելու մի անհուն տենչ.

— Մայրիկ, սոված եմ...

— Ի՞նչ բերեմ,— լացակումած ձայնով մրմնջաց մայրս:

— Թարմ, թարմ հաց և ձիթապտղի յուղ:

Տարօրինակ ու կարմացական աչքերով նայեց երեսիս.

— Բայց դա ի՞նչ ուտելու բան է, որդիս:

— Խնդրում եմ, մայրիկ:

Դա իմ կյանքի ամբողջ կյանքի ամենահամեղ առաջին ճաշն էր: Ես արագ ոտի կանգնեցի...

Բայց ես՝ ի՞նչ իմանայի, որ անքուն գիշերներից, ամեհի պայքարներից հետո այդ «ծիրանի կզեստներ հագած» մարդկանց կյանքը դառն էր ծովի ջրերի նման, ծովերի անհունությունն ու խորությունը ունեցող նրանց մարդկային սրտերին հակառակ: Ես ի՞նչ իմանայի, որ ոսկեճամուկ այդ բազմապան ձկներով լեցուն կամբյուղների պարունակությունից նրանց մնում էր հացը որպես բարիք և որպես գերապանց պարգև՝ «Ձիթապտղի յուղը»: Նրանց համար հացը, հողի քրտնաջան մշակի, հարազատի՝ դառն վաստակի բերքն էր, որը պետք է ուտեին երկյուղածությամբ:

Ծովի մարդը հասկանում էր հողի վաստակի ծանրությունը...

* * *

Չգիտեմ ինչո՞ւ, տարիներ հետո ես հիշեցի այդ բոլորը, հավանաբար իմ սենյակի կենտրոնում դրված սեղանի վրա հանգչող մատնաքաշն ու ձիթայուղի շշերն էին պատճառը: Հավանաբար մի շաբաթ տանը անկողնում մնալուց հետո, ինձ ճնշում էին սենյակի փակ դռներն ու պատերը, թերևս պատից ինձ նայող սև շրջանակի մեջ բանտված մորս երիտասարդության նկարն էր պատճառը: Եվ ինչ իմանալ, թերևս, անհուն ու անսահման ծովի կարոտն էր այդ բոլորը իմ մեջ խտացնում: Բայց կարևորն այն է, որ ես լավ էի զգում ինձ և օգտվելով այն բանից, որ ինձ հսկող չկար, ուզեցի դուրս գալ տնից, խառնվել մարդկանց հոսքին: Եվ դուրս եկա... Հեռվում նոր շինությունների կողքին բարձրացող կռունկները ինձ թվում էին վիթխարի առագաստանավեր, և անցնող յուրաքանչյուր մարդ, թվում էր, ծիրանագույն զգեստներ ունի հագին... Ժպտում էի յուրաքանչյուրին, բայց չգիտեմ հասկանո՞ւմ էին նրանք ինձ, չգիտեմ...

* * *

Չկնորսական առագաստանավերի, նրա մարդկանց, անհուն ծովերի և հրեղեն մի չքնաղ աղջկա համար շատ տարիներ առաջ իմ խոստացած ու չիրագործված ոսկյա կոշիկների փոխարեն, ես գրեցի այս պատմվածքը...




Նկ. ՍԱՄՎԵԼ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

Կատուն ընկավ մեջքի վրա,
Գետնին չկար կանաչ,
Ընկավ, տեղից չբարձրացավ,
Լսվեց մի խոր հառաչ:

Բժիշկ-շնիկն շտապ վազեց,
Եկավ իր հոր պատվին,
Սակայն ոչ մի դեղ ու դարման
Չօգնեց անբախտ կատվին:

Թաղման թափորն էր շարժվում լուռ,
Դագաղի մեջ՝ կատուն,
Սգում էին ջահել ու ծեր,
Փակ էր ամեն մի տուն:

Թաթիկներն են կրծքին խաչել,
Աչքերն էլ չեն փայլում,
Դոնքա կատուն սև շոր հագած՝
Առջևից էր քայլում:

Ձագուկների թևին սև կապ՝
Լալիս էին, հուզվում,
Թաթիկներով բրդոտ ու կոշտ
Արցունքները լիզում:

Միայն մկներն էին երգում,
Բռնած ուրախ շուրջպար.
Չէ՞ որ նրանց էլ չի տանջի
Կատուն գազանաբար:

Չկան խանութ կար փողոցում,
Տանում էին մոտից,
Մի վայրկյանում կատուն զարթնեց
Չկան անուշ հոտից:

Մկներն իսկույն իրար անցան,
Կորավ շուրջպարն անհետ,
Կատուն թռավ ետևներից
Որպես ահեղ մի նետ:

*Փոխադրեց ՀԵՆՐԻԿ ՍԵՎԱՆԸ*



# ՄԵՐ ՀԱՐԵՎԱՆ ԵՆՈՔԸ

*ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ*

*Նկ. ԷԴՎԱՐԴ ԶԱՔԱՐՅԱՆԻ*

— Ի՞նչ ես դառնալու: Մարդ չես դառնա, մա՛րդ,— աղմկում էր մեր հարևան Ենոքը:

Մենք լսում էինք նրա ձայնը պատուհանից և մայրս բացատրում էր.

— Չի ուզում, Արամը սովորել չի ուզում:

Եվ հենց այդ պահին էլ մի ահավոր իրարանցում լսվեց հարևան Ենոքի տնից և հետո էլ Արամի մոր ծղրտոցը.

— Հո գազան չես, ա՛յ մարդ, երեխային սպանեցիր, վայրենի...

Արամի ճիչը փոխվեց տնքոցի:

Հարևան Ենոքը խստոտ էր: Արամը՝ նրա միակ որդին, քաշել էր իրեն: Ինքն էլ ժամանակին չէր սովորել, անգրագետ էր մնացել և հիմա սաստիկ զղջում էր՝ «Լավ չէին ծեծում, խղճում էին, պիտի կողերս ջարդեին, որ մարդ դառնայի»,— ասում էր նա ու ափսոսում, որ այդպես չեն արել: Եվ ինքը հիմա ուզում էր ստիպել Արամին, որ գոնե նա սովորի, մարդ դառնա, բայց Արամը սովորել չէր ուզում: Ինչ արեց, ինչ չարեց՝ բան դուրս չեկավ: Հիմա սկսել էր ծեծել, և շատ վատ էր ծեծում: Այս անգամ նա ավելի վատ ծեծեց Արամին և մայրն այլևս չդիմացավ, գիշերվա կեսին վերցրեց տղային ու ոտքով մեկնեց իր հերանց գյուղը՝ Ղուրդուղուլի: Գնացին նրանք և այդպես էլ չվերադարձան: Հարևան Ենոքը մենակ մնաց, բոլորովին մենակ: Նա էլ չգնաց կնոջ հետևից, չգնաց տղային բերելու, մի կերպ հարմարվեց իր նոր վիճակին: Ինքն էր տնային գործերն անում, ճաշ եփում և, որ ամենից կարևորն էր, ոչինչ չէր պատմում. ոչինչ չէր հարցնում եկող-գնացողներից: Իսկ երբ պատահում էր, որ ղուրդուղուլեցիները գալիս էին թիակ կամ սոնակ պատվիրելու և իմանալով նրա հետ պատահած դժբախտությունը՝ խոսք էին բացում, նա լռեցնում էր նրանց: Չէր ուզում ոչինչ լսել: Եվ այդպես անցնում էին տարիներն իրար հետևից: Ծերանում էր մեր հարևանը, միակ որդու կարոտը սրտին: Որդուն կորցնելուց հետո նա մեկ-մեկ մեր տունն էր գալիս: Գալիս էր այն ժամերին, երբ դաս էինք սովորում, կանգնում էր տխուր, լացակումած, իր կոշտ ձեռքերով շոյում մեր գլուխները և ասում՝ «Սովորեք, սովորեք: Արամս չսովորեց: Արամս գնաց ինձանից»: Մենք խղճում էինք նրան, սիրում էինք այդ դժբախտության պատճառով, իսկ նա մեզ համար գունավոր մատիտներ էր բերում, տետրակներ, գրչակոթներ, թանաքամաններ՝ «Սովորեք, սովորեք, փոքրիկներս: Արամս չսովորեց»:

— Եղբայր Ենոք, կաց, միասին կճաշենք,— ասում էր մայրս:

— Չէ, քույրիկ ջան, հարամ է ինձ, չեմ ուզում: Ես իմ Արամին կորցրեցի,— այսպիսի դեպքերում սովորաբար նա հեռանում էր արտասվաթոր աչքերով:

— Մեղք է, խե՛ղճ մարդ,— ասում էր մայրս։

Էլի տարիներ անցան։ Մենք կամաց-կամաց սկսեցինք մոռանալ Արամին։ Ամեն տարի, Նոր տարվա օրը հարևան Ենոքը կանչում էր մեզ իր սենյակը, տոնածառ էր դնում, մոմեր վառում։ «Արամիս տոնածառն է»,— ասում էր նա և երևի չէր էլ պատկերացնում, որ Արամն արդեն մեծ տղա է և վաղուց դուրս է եկել տոնածառի տարիքից։ Նրա սենյակը լիքն էր տետրակներով, որ առել էր ամեն տարի Արամի համար, դասագրքերով, քանոններով, ծծաններով և նույնիսկ պայուսակներով։ Նրա սենյակը մտնողը կկարծեր, թե տունը լիքն է աշակերտական հասակի երեխաներով։ Ասում էր, որ այդ բոլորն առել է Արամի համար. «Ո՞վ գիտե, մեկ էլ տեսար, եկավ ու ասաց, թե սովորել է ուզում»։ Իհարկե, Արամն այդպես էլ չեկավ։ Մենք դպրոցն ավարտեցինք և, երբ պատրաստվում էինք համալսարան գնալ, մեր հարևանը մեռավ։ Թաղման օրը Արամը եկել էր մոր հետ։ Խոշոր, մարմնեղ տղա էր, նա մեզնից մեծ էր երեք թե չորս տարով։ Նա լաց չէր լինում, մայրն էլ լուռ էր, լաց լինողն իմ մայրն էր միայն և մեր հարևանուհիներից մի ուրիշը։ Հաջորդ օրը նրանք նորից գնացին Ղուրդուղուլի և մի շաբաթ հետո բոլորովին տեղափոխվեցին Էջմիածին, իրենց տունը։ Մենք Արամի հետ այլևս ընկերություն չէինք անում։ Եվ երբ Երևան պիտի տեղափոխվեինք, Արամին ասացի.

— Հայրիկդ շատ էր ուզում, որ դու սովորեիր։

— Գիտեմ, շշնջաց Արամը և գլուխը կախեց։ Նա այդպես էլ չէր սովորել։

Ժամանակն անցնում է աննկատ, ավելի արագ, քան մենք ենք կարծում։ Կարծես երեկ լիներ այդ բոլորը, բայց արդեն անցել է քառասուն տարի։ Հիմա մենք նորից ենք հանդիպել և նա ինձ չի ճանաչում։ Ես նրան չեմ ասում, թե ով եմ։ Ես նրա տանն եմ, բնակարանում։ Պատից կախված են մոր և հոր՝ հարևան Ենոքի նկարները։ Կախված են իրար կողքի։ Դեղնած, խունացած նկարներ են։ Այն ժամանակվա նշանավոր լուսանկարիչ Գառնիկ Մելիքյանի աշխատանքն է այդ։ Այդ այն բոլորն է, ինչ որ մնացել է ծնողներից։ Արամը ժպտում է ինձ.

— Ծնողներս են։ Հայրիկս ու մայրիկս։

— Գիտեմ,— շշնջացի ես, բայց նա, երևի, չնկատեց իմ դեմքի վրայով անցնող ստվերը, որ ես զգացի որպես ջերմություն։ Խեղճ մարդ, ինչպե՜ս էր տանջվում, ինչպե՜ս էր սիրում Արամին։

— Երեք տղա ունեմ,— ասաց ինձ Արամը,— երեքն էլ լավ վարպետներ են։ Ավարտեցին արհեստագործական դպրոցը, հետո մեծը համալսարան մտավ, հիմա ինժեներ է, իսկական ինժեներ։

— Անունն ի՞նչ է։

— Հայրիկիս անունն եմ տվել նրան։ Ենոք է։

— Իսկ դու որևէ արհեստ ունե՞ս,— հարցրեցի



ավելի շատ հանդիմանելու, քան իմանալու համար: Գիտեի, որ չունի:

— Ո՛չ, — ասաց նա, — չունեմ: Դե, մեր ժամանակներն այլ էին, հայրս չկարողացավ ինձ դպրոց ուղարկել, միջոցներ չկային:

Քիչ էր մնում, որ ասեի, թե ով եմ, բայց չասացի: Ծանր տարիներ էին, ի՞նչ կարող էր անել խեղճ մարդը: Ես ուզեցի ասել, որ որբերը, այն որբերը, որ ոչ միայն ծնողներ, այլև ոչինչ չունեին, էլի սովորում էին, որ սովորում էին նույնիսկ մեռնողները, որ հայ կինը շունչը փչելիս էլ մտածում էր երեխային մի տառ ավել սովորեցնել... Ես շատ բան էի ուզում ասել, բայց էլի չասացի, չասացի, որովհետև լավ էի ճանաչում իրեն, չուզեցի տղաների աչքում նսեմացնել նրան:

— Լավ տղաներ ունեմ: Փոքրս էլ շուտով կավարտի պոլիտեխնիկ ինստիտուտը, — շարունակեց Արամը, — բայց ծույլ է: Չգիտեմ ո՞ւմ է քաշել:

Ես գիտեմ, դու էլ գիտես, կինդ էլ գիտե, որ հիմա խորամանկորեն ժպտում է, նա ուրախությամբ կասեր հիմա, որ ինչ-որ չափով քեզ է քաշել, բայց ամաչում է ինձանից, չի ասում, քաշվում է: Ա՜խ, Արամ, Արամ... ինչպե՞ս է, որ դու ինձ չես հիշում: Եթե հիշեիր, շատ բաների մասին կխոսեինք: Հիմա էլ ինչի՞ մասին խոսենք: Հիմա զարմանալու ոչինչ չկա, որ տղաներդ արհեստագործական դպրոցն են վերջացրել և հետո էլ սովորել, ինժեներ են դարձել: Այդ հիմա շատ սովորական բան է, դրանով ինձ չես զարմացնի: Ես հիմա ստիպված եմ թողնել քո տունը և չգիտեմ, թե մյուս անգամ երբ եմ գալու: Եթե ամեն ինչ բարեհաջող լինի, մեկ էլ կգամ, երբ թոռներդ ինժեներ դառնան: Կգամ ու կասեմ, թե ով եմ ես:

Դուրս եմ գալիս Արամի տնից և մտածում, թե որքա՜ն է փոխվել ամեն ինչ մեր կյանքում: Այնքան գրասեր վարպետ Եղոյի տղան անգրագետ մնաց, չսովորեց, իսկ հիմա ինքն է հպարտանում իր երեխաներով և իրավունք ունի հպարտանալու: Ոչինչ ասել չես կարող: Երեք տղա ունի, երեքն էլ բարձրագույն կրթության տեր են, երեքն էլ իրենց առաջին քայլերն արել են արհեստագործական դպրոցից, երեքն էլ ոսկի ձեռքեր ունեն: Իսկ ինչո՞ւ, ինչո՞ւ ինքը չսովորեց, ինքն էլ կարող էր ոսկի ձեռքեր ունենալ: Չուզեց: «Արամս գնաց ինձանից, Արամս չուզեց սովորել»: Հիմա պատից կախված է վարպետ Եղոյի լուսանկարը և կարծես նայում է թոռներին, Արամին: Ինչ լավ կլիներ, եթե լուսանկարները տեսնեին ու զգային այն բոլորը, ինչ որ տեղի է ունենում իրենց շուրջը: Գոնե թոռներով կմխիթարվեր խեղճ մարդը: Ես քայլում ու նախանձում եմ Արամին, մտածելով, որ նա, համենայն դեպս, երեք տղա է մեծացրել և երեք ինժեներ ավել մեր ժողովրդին:






## ԿԼԱՆՈՂ ԱՎԱԶԻ ՀԱՆԵԼՈՒԿԸ

Անցյալ տարվա գարնանը երկու ամերիկացի ուսանողներ՝ Ջոն Պիկերթը և Ֆրեդ Սթելը ամայի վայրերում արևադարձային եզակի բուսականություն էին որոնում: Ուսապարկերով ծանրաբեռնված, նրանք մոտեցան մի բացատի, որտեղ ամբողջությամբ ավազ էր: Պիկերթը, որ գնում էր առջևից, բղավեց.

— Կանգնի՛ր:

Նա խրվեց արտաքուստ սովորական թվացող ավազի մեջ և, երբ փորձեց դուրս գալ, ավելի խրվեց:

— Օգնի՛ր ինձ, — բղավեց Պիկերթը, — խրվել եմ կլանող ավազի մեջ:

Եթե ընկերը հետևեր նրան, երկուսն էլ կընկնեին թակարդը: Իսկ մոտակայքում ոչ ոք չկար, որ կարողանար օգնել նրանց: Երբ Պիկերթը փորձեց մի ոտք դուրս հանել, մյուս ոտքը ավելի խրվեց: Եվ կորցնելով հավասարակշռությունը՝ նա ընկավ ձեռքերի վրա: Ընկերը մի երկար ճյուղ մեկնեց նրան, սակայն Պիկերթը էլ չէր կարող ձեռքերը ավազից ազատել, որ ճյուղը բռնի... Ու նա ամբողջո-



վին խորասուզվեց ավազի մեջ:

Այդ բոլորը կատարվեց ընդամենը մի քանի րոպեում:

Կլանող ավազուտներում շատ մարդիկ են խորտակվել, որոշ տեղերում, իհարկե, վտանգի մասին ճամփորդներին զգուշացնում են նշանաձողերը:

Ուսանող Պիկերթի խորտակման կապակցությամբ ամերիկյան թերթերից մեկը տպագրեց հետևյալ միջադեպը: 1945 թվականի ապրիլին, երբ ամերիկյան զորքերը արդեն գտնվում էին ֆաշիստական Գերմանիայում, խճուղով շարժվում էր ինչ-որ մի ավտոշարասյուն: Հանկարծ ավտոների վրա հարձակվում են գերմանական օդանավեր: Վարորդներից մեկը ճարպկորեն թեքելով մեքենայի ղեկը, փորձում է մեքենայով հանդերձ թաքնվել մոտակա թփուտներում: Մի հարմար տեղ գտնելով, նա կանգնեցնում է մեքենան և սպասում մինչև գերմանական ռմբակոծիչները հեռանան: Հետո, երբ ուզում է մեքենայի դռնակը բաց անել, դուռը չի բացվում: Ենթասպան դուրս է նայում պատուհանից և ինչ տեսնում... ավազ, որը հետզհետե բարձրանում և ծածկում է ամբողջ ապակին՝ մեքենան սուզվում է ավազի տակ: Վարորդին մի ելք է մնում միայն, դուրս գալ մեքենայի վերնամասից: Բայց շուտով ավազը հասնում է և այնտեղ: Ենթասպան հարմարեցնում և ցատկում է գետին ու ձեռքերով կառչում մի ճյուղից: Բեռնատար մեքենան իր ծանր բեռով ամբողջությամբ կորչում է ավազի մեջ...

Նման երևույթները ստիպում են գիտնականներին լրջորեն զբաղվել կլանող ավազների հարցով: Հնդկաստանի երկրաբանության դոկտոր պրոֆեսոր Էռնստ Ծմիթը շատ ժամանակ է հատկացրել իր ապրած քաղաքից ոչ հեռու մի ավազոտ արոտավայրի ուսումնասիրությանը: Ծմիթը քարեր էր գցում ավազի մեջ ու հետևում, թե ինչպես են նրանք անհայտանում: Ինչո՞վ է տարբերվում այս ավազը սովորականից:

Առաջներում կարծում էին, թե կլանող ավազը բաղկացած է հավասարապես կլոր ավազահատիկներից, որի պատճառով էլ ծանր առարկաները արագ և հեշտությամբ խորասուզվում են ավազի մեջ:

Մյուս ենթադրությունը հաստատում է, որ ավազահատիկները երբեմն սահուն են լինում, և դրա համար առարկաները սահում են ներս:

Ծմիթը զննելով ավազահատիկները մանրադիտակի տակ, որոշեց, որ կան և՛ կլոր, և՛ անկանոն, և՛ երբեմն սուր անկյուններով ավազահատիկներ: Այդպիսով, կլոր ավազահատիկների մասին եղած կարծիքը հերքվեց: Չհաստատվեց նաև սահուն ավազահատիկների մասին եղած կարծիքը:

Շատ հետաքրքիր մի փորձ է կատարել մեկ ուրիշ երկրաբան: Նա ավազի վրա դնում էր պլաստմասսայի ֆիգուրներ, որոնց քաշը համապատասխանում էր մարդու մարմնի քաշին: Որից հետո խողովակի միջոցով ջուր էր սրսկում ավազի մեջ: Քանի ավազը չոր էր, տիկնիկը կարող էր նրա վրա կանգնել կամ պառկել: Եթե ավազը թրջում էին երեսից, տիկնիկը մնում էր ավազի վրա: Իսկ եթե ջուրը ավազի տակն էին անցկացնում, տիկնիկը անհայտանում էր:

Այդ երկրաբանը հաստատում է, որ կլանող ավազի մեջ կարելի է շարժվել, ինչպես ջրում: Հարկավոր է միայն սովորել դա, ինչպես լող տալն են սովորում: Նման մի փորձ կատարեց հենց ինքը՝ երկրաբանը, մի գետի հունը կարգավորելու ժամանակ: Կեսօրից ոչ շատ առաջ, գետի հունի մոտ նա մտավ կլանող ավազի մեջ, մի քանի քայլ կատարելուց հետո խորասուզվեց: Երեկոյան նա դուրս եկավ ամուր գետնի վրա: Ընդամենը երեք մետր տարածություն անցնելու համար անհրաժեշտ եղավ ութ ժամ:

Սակայն այդ փորձի առանձնահատկությունները հայտնի չեն, և ճշմարտացիությունը առայժմ դեռ չի հաստատված:



# ԽՈՐԱՍՈՒԶՎԱԾ ՔԱՂԱՔՆԵՐ



Իտալացի Գարգալլոն, որը ստորջրյա զբոսանքի սիրահար է, 9—15 մետր խորության վրա մի անհայտ քաղաքի փլատակներ հայտնաբերեց: Նա կարծում է, թե դա հին էտրուսկական քաղաքի մնացորդ է, որը ժամանակին գտնվելիս է եղել ծովի ափին՝ Հռոմից մի քիչ հյուսիս: Գիտնականները շատ քիչ բան գիտեն էտրուսկների մասին, որոնք հնագույն ժամանակներում բնակվում էին Իտալիայում: Մինչև այժմ չեն վերծանված էտրուսկական գրերը: Իտալական ափերի մոտ մինչև այժմ հայտնի է 20-ից ավելի խորասուզված քաղաք, այնինչ Միջերկրականյան ծովի մակերեսի բարձրությունը սառցադաշտաշրջանից հետո ամենևին չի փոխվել: Իտալական խորասուզված քաղաքները մինչև հիմա մնում են որպես առեղծված:



## ԱՆՍՈՎՈՐ ՃԱԿԱՏԱՄԱՐՏ

Մալայական Տամպենի գյուղում հսկայական, հինգ մետրանոց պիթոնները ուղղակի հանգիստ չէին տալիս գյուղացիներին: Հուլիսյան մի շոգ օր այնտեղ հավաքվեց մոտ ութսուն պիթոն: Սարսափած եղան մի ջոկատ ոստիկան ուղարկել այդ գյուղը: Կես ժամվա ճակատամարտից հետո դաշտում մնացին վաթսուն սպանված պիթոն: Մնացած քսանը հասցրին փախչել:

## ՄԹԵՐՔԸ ՁՅՈՒՆԵՐԻ ՄԵՋ

Անտարկտիդայի ձյուների մեջ գտնվեցին անգլիացիներ Սկոտի և Շեկլտոնի էքսպեդիցիաների սննդամթերքի պահեստները: Ավելի քան կես դար ձյան մեջ մնալուց հետո էլ մսի պահածոները, սիսեռի ապուրի կոնցենտրատները, թեյը, կակաոն, ինչպես ցույց տվին անալիզները, ուտելու համար պիտանի էին: Նույնիսկ նրանց տուփերի արտաքին տեսքը չէր փոխվել:



## ԵՎՍ ՄԻ ԱՆՍՈՎՈՐ ՃԱԿԱՏԱՄԱՐՏ

Ամերիկյան օդանավակայաններից մեկում օդաչուները չորս օր կատաղի ճակատամարտ էին մղում ընդդեմ... մեղվապարսի, որը բնակվել էր օդանավերից մեկի մեջ: Սկզբում օդաչուները փորձեցին մեղուներին դուրս քշել ձեռքերով, բայց դա վերջացավ օդաչուների փախուստով: Հաջորդ օրը նրանք ժամանակակից տեխնիկա օգտագործեցին, ընդհուպ մինչև քիմիական նյութերի սրսկում: Մեղուները սկզբում փախան, բայց քանի որ մայր մեղուն մնում էր օդանավի մեջ, ամբողջ պարսը նորից վերադարձավ օդանավ: Միայն չորս օրվա պայքարից հետո օդաչուները գլխի ընկան, որ պետք է մեղվաբույծ հրավիրել: Մեղվաբույծը դուրս հանեց մայր մեղվին, և ամբողջ պարսը երկու րոպեում թողեց օդանավը:

## ԱՆՊՈՉ ԿԱՏՈՒՆԵՐ

Իռլանդական ծովում մի փոքրիկ կղզի կա, որը կոչվում է Մեն: Այդ կղզին ոչնչով չի տարբերվում մյուսներից իր արտաքինով, բայց ունի կատուների մի առանձնահատուկ տեսակ: Կղզու վրա ապրող կատուները բոլորովին պոչ չունեն: Բրդի մի փունջ ունեն պոչի տեղում, ուրիշ ոչինչ:

Անպոչ կատուների ծագումն անհայտ է: Ենթադրում են, թե կատուների այդ տեսակը առաջացել է Ճապոնիայում և տեղափոխել Մեն կղզին, բայց դա միայն ենթադրություն է:



# Մանուկ շախմատիստի դպրոց

դասավանդում է աշխարհի չեմպիոն
ՏԻԳՐԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ

## ԲԱՐԴ ԿՈՄԲԻՆԱՑԻԱՆԵՐ

Անցյալ անգամ մենք քննարկեցինք կոմբինացիաներ, որոնցում խաղի ելքի համար դեր խաղաց ինչ-որ մի եղանակ: Այժմ վերլուծենք կոմբինացիաներ, որոնց մեջ միահյուսվում են մի քանի տարբեր եղանակներ:




Պարտիան կարող է ավարտվել այսպես՝ 1...Նd2+2.Փ:d2 — Թ:d2+3.Աb3 Ձd4+ 4.Աa4 Նa6+! 5.Թ:a6 Թd1+7.Աa5 Թa4+8.Ա:a4 Ձc3+9.Աa5 Ձb3×: Այս կոմբինացիայում սևերը՝ ա) նավակը փղի հետ փոխանակմամբ սպիտակ արքային զրկեցին պաշտպանող կարևոր ֆիգուրից. բ) նավակի զոհաբերմամբ սպիտակ թագուհուն հարկադրեցին շրջափակել «a6» դաշտը, որը հետագայում անհրաժեշտ կլինի արքայի համար. Թa4 գեղեցիկ քայլով ժամանակ շահեցին, որպեսզի ձիով «c3» դաշտը գրավեն շախով:




Հատկապես հաճախ են հանդիպում 8-րդ հորիզոնականի թուլությունը օգտագործող կոմբինացիաները: Ահա մի հիանալի օրինակ այդ թեմայով: Առաջին հայացքից դժվար է պատկերացնել, որ 8-րդ հորիզոնականը սևերին կարող է «տհաճություններ» պատճառել: Չէ՞ որ երկու նավակները հուսալիորեն պաշտպանում են այդ գիծը: Սակայն տեսնենք, թե ինչ տեղի ունեցավ Ադամ-Տորրե պարտիայում, որտեղից վերցված է այս դիրքը:

1.Թg4! (կարելի է ենթադրել, որ այս գեղեցիկ քայլը կատարված է՝ աչքի առաջ ունենալով մրցակցի 1...Թ:g4? սխալ պատասխանը, որին կհետևի 2.Ն:e8+ և մատ հաջորդ քայլում: Պարզվում է սակայն, որ սևերի համար լավ քայլ գտնելը այնքան էլ հեշտ չէ: Հարձակման ենթարկված թագուհուն պաշտպանելու փորձը վատ հետևանք կունենար, հետևապես պետք է նահանջել: Բայց չէ՞ որ թագուհին «զբաղված է» e8 նավակի պաշտպանմամբ, ուստի սևերի միակ խելացի քայլն է) 1...Թb5 2.Թc4!! (սպիտակ թագուհին անպատիժ կերպով կանգնում է կրկնակի հարվածի տակ) 2...Թd7: (Թվում է սպիտակները առանձնապես ոչ մի բանի չհասան) բայց ...3.Թc7!! (Զնայած քայլի իմաստը մեզ համար չարդեն ակնհայտ է, այնուամենայնիվ մեծ հիացմունք է պատճառում գեղեցիկ այս պատասխանը) 3...Թb5: (Սևերը պաշտպանվում են սառնասրտորեն, միաժամանակ սարքելով ծուղակ: Չէ՞ որ սպիտակների համար դժվար չէ 4.Թ:b7 քայլը կատարել, սակայն կհետևի 4...Թ:e2! և պարզվում է, որ սպիտակների առաջին հորիզոնականն էլ է վատ պաշտպանված՝ 5.Ն:e2 Նc1+ տարբերակի պատճառով, և անսպասելիորեն մատը ստանում են սպիտակները) 4.a4 Թ:a4 5.Նe4!!. Թb5 6.Թ:b7! (միայն այժմ այսպես, երբ սպիտակները թագուհու հարվածի տակից հեռացրեցին նավակը: Հիմա դժվար չէ համոզվել, որ սևերը պարտվում են):

Քննարկված դիրքը դարձել է դասական: Այն մտել է շախմատի բոլոր դասագրքերի մեջ:

Հետևյալ օրինակը վերցված է կոմպոզիտոր Ալ. Դոլուխանյանի ստեղծագործությունից: Ուժեղ շախմատիստ Դոլուխանյանը նախապատերազմյան տարիներին հաջողությամբ է հանդես եկել պատասխանատու մրցություններին, իսկ 1939 թ. նա Հայաստանի չեմպիոնն էր:



Սևերով խաղացող Դուլուխան-յանը իրագործեց խորը մտած-ված գեղեցիկ կոմբինացիա:

1. . . Ն : h2! 2. Ն : h2 Թ : a3! 3. ba Փ : a3+ 3. Աb1 Զc3+ 5. Աa1 Փb2+! Ահա կոմբինա-ցիայի գլուխգործոցը: 6. Ա : b2 Զ : d1+ 7. Աc1 Զ : e3. և սևերը գերակշռություն ստացան:

Այս օրինակից հետևում է՝ պար-տադիր չէ, որ շնորհիվ կոմբինա-ցիաների պարտիան անմիջապես ավարտվի: Նրանք կարող են նյութական և դիրքային առավե-լությունների հանգեցնել: Կարե-վոր է կոմբինացիաների դերը նաև դժվարին դիրքերի պաշտ-պանության ժամանակ:



Սևերը բացահայտ նյութական առավելություն ունեն, սակայն սպիտակները փրկվում են շատ հետաքրքիր ձևով:

1. Թb5+ Ա : d6 2. Թc5+!! bc+ 3. Աa3! Արտասովոր դիրք: Զնայած քայլը սևերինն է, բայց պատի շնորհիվ սպիտակներին հաջողվում է փրկվել:

Փորձեցեք վճռել ստորև բեր-



* * *



ված օրինակը, որը կազմված է նախորդ թեմայով:

Թվում է, թե այս դիրքում սպիտակները պետք է թագուհի կորցնեն: Բայց ես կարող եմ ձեզ «հուշել»՝ սպիտակները հաղթում են շնորհիվ մատային սպառնալիքի «g7» դաշտում: Փորձեցեք գտնել:



Ուշադրությամբ նայեցեք այս դիրքին: Սև փիղը «d» գծով կապված է, և թվում է, թե դա «մահացու էր»: Պատահական չէ, որ սևերով խաղացող վար-պետը անմիջապես անձնատուր եղավ: Արդյոք ճի՞շտ վարվեցին սևերը:



Ահա և մի հետաքրքիր դիրք, որի լուծման համար անհրա-ժեշտ է ոչ միայն տեսնել տակ-տիկական նրբությունները, այլև ծանոթ լինել վերջնախա-ղերի տեսության կարևորագույն դիրքերին: Սևերը սկսում են և խաղը ավարտում ոչ-ոքի:

1. . . Նe1+ 2. Թ : e1 Թ : b2+ 3. Ա : b2 Զd3+ 4. Աc3 Զ : e1 5. Փe4 Զ : g2: Առանց այդ քայ-լի սևերի ամբողջ կոմբինացիան անիմաստ կլիներ: Իսկ այժմ, չնայած սպիտակները խոշոր նյութական առավելություն ու-նեն, սպիտակները ոչ-ոքիի են հասնում՝ քայլելով արքայով a8, c8 c7 վանդակների վրա:



Սպիտակները նյութական առավելություն ունեն: Սակայն գրոհը սևերի կողմն է՝ սպառ-նում է ինչպես Թg2, այնպես էլ Թ : f2+ այնուհետև Թf1+: Մտածեցեք, սպիտակները ինչ-պե՞ս կարող են կասեցնել սևերի սպառնալիքները: Ինչպե՞ս կա-վարտվի պարտիան: Կհաղթե՞ն արդյոք սպիտակները: Ակներև է, որ նշված դիրքում քայլի հերթը սպիտակներինն է:

Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

6
ՀՈՒՆԻՍ
1967

ՀԼԿՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
նկ. ՄԱՆՈՒԿ ՂՈԴՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Ռ., ԲԱՐԽԱՆՅԱՆ Վ., ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Գ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղարվեստական խմբագիր)

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41,
Հեռախոսներ՝ 2—44—83, 2—68—16, 2—59—06։

ՎՖ 06456։ Պատվեր՝ 648։ Տպաքանակ՝ 42000։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 6/VI 1967 թ.։
ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ,
Երևան, Տերյան փ. № 91։
Գինը՝ 10 կ.



## ՀԱՆԳՍՏԻ ԺԱՄԻՆ

### ԽԱՉԲԱՌ ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

1. Ճերմակ է ներկում նա դաշտն ու սարը,
Ոչ գալն ենք տեսնում ու ոչ գնալը։

2. Թևեր ունի բարակ ու լայն,
Բայց թռչում է մթնում միայն։

3. Հեռվից եկած, դուռը փակած,
Վրան գրած, նամփու դրած։

4. Կանգնեց ցմփորն առանց ոտի,
Ոտից գլուխ կապած գոտի։

5. Հանկարծ մի տեղ որ իջնի,
Ինչ որ տեսնի՝ կթրջի։

6. Թե խփես, շարունակ նա պար կգա,
Մեկ՝ ոտքերիդ տակ, մեկ՝ ձեռքերիդ վրա։

7. Բացի պոչից, եղջյուրներից,
Ջունի ոչինչ։

8. Մորթին՝ փայլուն ու փափուկ,
Ոչ սողուն է ու ոչ մուկ,
Հողն է փորում նա թաքուն,
Ապրում հողե տնակում։

9. Ո՞վ է սուլում ու մռնչում,
Ծուխ ու շոգի արտաշնչում,
Տանում բերում բեռներ ու մարդ՝
Ուղիներով երկաթապատ։

10. Ծնված օրից կպչում է քեզ
Ու մինչև մահ էլ չի պոկվում։

11. Գոյական եմ հինգ տառից,
Պատերի մեջ փնտրիր ինձ։

12. Նա կրծում է և կտրում,
Բայց ոչ մի բան չի ուտում։

13. Մի գլխարկ են, չորս եղբայր,
Գործն իրար մեջ բաժանում են հավասար։

14. Թռչում է, բայց թռչուն չէ,
Փոքրիկ է, բայց մրջյուն չէ:

15. Արագավազ ու կարճապոչ,
Աչքեր ունի, թարթիչներ՝ ոչ:

16. Փոքրիկ երգող թռչնակ եմ ես,
Իմ անունը գտիր այսպես.
Հինգ տառից է այն բաղկացած,
Երեք տառը բույս է ցանած,
Իսկ երկուսը գետակների սկիզբն է պարզ:

17. Ո՛չ բերան ունի,
Ո՛չ ձեռք, ո՛չ լեզու,
Բայց երգում է նա,
Նվագում, խոսում:




18. Ջունի տերև, չունի ցողուն,
Ունի արմատ, բայց ոչ հողում:

Առաջարկ՝ ՍԵՐՅՈԺԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

## ԽԱՂ–ԽՆԴԻՐ

Սեղանին դրեք շաշկիի 16 քար և երկու հոգով հերթով սկսեք վերցնել դրանք: Ամեն անգամ թույլատրվում է վերցնել մինչև 3 հատ: Պարտվում է նա, ով վերջինն է վերցնում:

Կարո՞ղ է արդյոք սկզբում վերցնողը միշտ հաղթել:

Առաջարկ՝ ՍԱՐԳԻՍ ՆԵՐՍԻՍՅԱՆԻ

## ՀՐԱՎԻՐՈՒՄ ԵՆՔ ՊԱՐԵԼՈՒ

Բացատի կամ դահլիճի կենտրոնում, աթոռի վրա նստել է մի աղջիկ: Ձեռքին ծաղկեփունջ կա: Երկու տղա մոտենում են նրան և հրավիրում պարելու: Աղջիկը նրանցից մեկին տալիս է ծաղկեփունջը, իսկ մյուսի հետ պարում: Ծաղկեփունջը վերցնող տղան նստում է աթոռին: Այս անգամ նրան մոտենում են երկու աղջիկ և հրավիրում պարելու: Տղան մեկին տալիս է ծաղկեփունջը, իսկ մյուսի հետ գնում պարելու: Եվ այսպես շարունակ պարողների թիվը ավելանում է:

Խաղի ժամանակ պարել ցանկացողները պետք է պահպանեն հրավիրելու կարգը: Իսկ այդ մասին նրանք պետք է իմանան խաղի սկզբում: Անհրաժեշտ է ընտրել այնպիսի պարեղանակներ, որոնք ծանոթ են երեխաների մեծ մասին:

## 12 ԶՈՂԻԿ

Այս խաղը պետք է կազմակերպել բակում, բացատում կամ որևէ այլ տեղ, որտեղ կան թփեր, ծառեր և ուրիշ թաքստոցներ:

Քարի վրա դնում ենք ոչ մեծ տախտակ և մի ծայրին շարում ենք 12 հատ փայտե ձողիկներ:

Խաղացողներից մեկը մոտենում ու ոտքով խփում է տախտակի ազատ ծայրին: Ձողիկները թռչում են տարբեր կողմեր, իսկ երեխաները վազում են և թաքնվում: Խաղավարը հավաքում է ձողերը, նորից դնում տեղը և զգուշորեն, տախտակից շատ չհեռանալով, սկսում է փնտրել երեխաներին: Նկատելով մեկնումեկին, նա վազում է դեպի տախտակը, ձեռքով խփում տախտակին և բարձր արտասանում թաքնվածի անունը: Թաքնվածը դուրս է գալիս թաքստոցից: Խաղավարը շարունակում է փնտրել մյուսներին: Եթե փնտրելու ընթացքում խաղացողներից մեկը դուրս գա թաքստոցից, առաջ անցնելով խաղավարից, վազի դեպի տախտակը և գցի ձողերը, խաղավարը պետք է նորից հավաքի դրանք, իսկ մնացած երեխաները վազեն թաքնվելու: Խաղավարը պետք է կարողանա գտնել բոլոր խաղացողներին: Դրանից հետո կարելի է ընտրել նոր խաղավար:





Ջունգլի ԱԹՈՅԱՆ ԱՇՈՏ

Երևանի № 106 դպր. 3-րդ դաս.



Տուն ԱՐՋՈՒՄԱՆՅԱՆ ԼԻԼԻԹ

Երևանի № 130 դպր. 3-րդ դաս.

# ՄԱՅՐԻԿԻՍ

Մայր, քեզ համար երգ եմ երգում,
Ո՞նց կստացվի, չգիտեմ.
Տե՛ս, ինչպե՛ս է ձեռքս դողում
Քո անսահման պարտքի դեմ:

Չէ՞ որ դու էլ էիր դողում
Կյանքիս համար անդադար,
Երբ չկայի ես աշխարհում
Լուկ հույս էի քեզ համար:

Պահեցիր ինձ հողը ծաղկին,
Ու երբ արդեն ծնվեցի,
Դու սիրելի քո դստրիկին
Ծաղկի անվամբ կոչեցիր:

Ուրախացար դու իմ խաղով
Ու հասակով օր-օրի,
Չթողեցիր սրտի դողով,
Որ ուրիշն ինձ օրորի:

Կյանքդ կյանքիս տվիր թել-թել,
Մազիդ թուխը՝ իմ մազին
Ու երբ մեծ եմ հիմա արդեն,
Դեռ հոգում ես իմ մասին:

ՍՈՒՍԱՆՆԱ ԻՎԱՆՅԱՆ

Երևանի № 56 դպրոց, 6-րդ դաս.





Այծ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ ԼՅՈՎԱ

Երևանի № 106 դպր. 4-րդ դաս.

Ծաղիկներ

ԶԱՄԲԱԶՅԱՆ ԳԱՐՈՒՇ

Լենինականի № 25 դպր. 6-րդ դաս.